# ԱՐՁԱԳԱՆՔ ԳՈՐԾՈՑ

ՏԻԳՐԱՆԵԱՆ ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ՔԱՂՈՒԱԾ ԱՊԱՑՈՅՑ ԵՒ ՏԵՍԱՐԱՆ ԳՐՔԷՆ

ԿՇԻՌ ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ ՈՒՆԻՑԻՍ Ի ՁԵՌԻՆ ՔՈՒՄ



ԿՇԻՌ ՆԵՆԳՈՒԹԵԱՆ ՊԻՂԾ Է ԱՌԱՋԻ ՏԵԱՌՆ
(Առակ. ԺԱ. 1)

---

ԶԻ ՈՐՈՎ ՉԱՓՈՎ ՉԱՓԷՔ ՆՈՎԻՆ ՉԱՓՈՎ ՉԱՓԵՍՑԻ ՁԵԶ
ՄՏ. Է. 2

Քանզի ՈՉ ԻՆՉ ՕԳՆԵՍՑԵՆ ԳԱՆՁՔ ԱՆՕՐԻՆԱՑ. ԱՅԼ ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆ ՓՐԿԷ Ի ՄԱՀՈՒԱՆԷ ԱՌ. 2: :3

Վասն զի ՈՉ ՍՈՎԱՄԱՀ ԱՌՆԷ ՏԷՐ ԶԱՆՁՆ ԱՐԴԱՐՈՅ ԲԱՅՑ ԶԿԵԱՆՍ ԱՄԲԱՐՇՏԱՑ ԿՈՐԾԱՆԵՍՑԷ

Քանզի ՊԻՂԾ Է ԱՐԴԱՐՈՅ ԱՅՐ ԱՆԻՐԱՒ
ԵՒ ՊԻՂԾ Է ԱՆՕՐԻՆԻ ՈՒՂԻՂ ՃԱՆԱՊԱՐՀ ԱՌ. Լ. 27

---

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՇՃԵԱՆ ԵՈՒՍՈՒՖԵԱՆ ԽԱՆ

— 1890 —

ԱՐՁԱԳԱՆՔ ԳՈՐԾՈՑ

ՏԻԳՐԱՆԵԱՆ ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ՔԱՂՈՒԱԾ ԱՊԱՑՈՅՑ ԵՒ ՏԵՍԱՐԱՆ ԳՐՔԻՆ



ԿՇԻՌ ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ ՈՒՆԻՑԻՍ Ի ՁԵՌՈՒՆ ՔՈՒՄ



ԿՇԻՌ ՆԵՆԳՈՒԹԵԱՆ ԳԻՂՇ Է ԱՌԱՋԻ ՏԵԱՌՆ

(Առկ. ԺԱ. 1)

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ա. Մ. ԱՃԷՄԵԱՆ ԵՈՒՍՈՒՖԵԱՆ ԽԱՆ

— 1880 —

ջերմին, տասը տարւոյ ժամանակ, երբեմն գործեցինք և երբեմն դադրեցանք եւայլն. ինչպէս հետեւեալ պատ-պարիարքի նամակէն ալ կը յայտնուի մեր ըսածները ։

Գերապատիւ Սրբիլի ·

Գրութիւնք առինք · զի ժողովուրդն, շնորհակալ է զձէնջ և մանաւանդ դպրոցներ հաստատելու և անշահասէր աշխատութեանցդ, զի որով բերկրեցոյց զմեզ և ըզ կրկին ժողովս, և զլրութիւն ազգիս ։

Իսկ Մշոյ վանահարց եւայլն. խոչնդոտն լինել բարեկարգ ընթացից ձերոյ ոչ սակաւ տրտմեցոյց զմեզ, անձնապահ լեր առ ժամանակ ինչ ի Մուշ երթեւեկելոյ մինչեւ գրեսցուք առ գերապատիւ Արքեպիսկոպոսն Կարնոյ և Մշոյ ։

Արդարեւ բազում վշտաց և նեղութեանց տանիք. իսկ վարձք և հատուցումն անբաւ են յԱստուծոյ և յԱզգային կառավարութենէ, և վարժարանի համար գնածդ գրեանց դրամն Մեծ. Արապեան Գէորգ Աղայէն դրկէք ·

1854 դեկ. 31 — ՅԱԿՈԲ ԱՐՔ ԵՊԻՍ.
ի Պատրիարքարան Հայոց — Պ. Կ. ՊՈԼՍՈՅ

Վերջապէս որ և լցէ մեծագոյն մասամբ կղերներէն հալածուելով 1858 ին եկի Պոլիս և Ամենապատիւ Գէորգ սրբազան պատրիարք Սամաթիոյ Նոր-Թաղ Գլխադիր սուրբ Յակովբ եկեղեցին քարոզիչ կարգեց · ուր որ ուխտատեղի մի եղաւ հոն ամենայն ազգաց, և ժողովըրդեան բազմութեան մեզ հետ ունեցած համակրութիւնը և ջերմ սէրը, յարուցին մեր վերայ Պոլսոյ ոմանք

# ԱՐՁԱԳԱՆՔ ԳՈՐԾՈՑ

ՏԻԳՐԱՆՆԵԱՆ ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ՔԱՂՈՒԱԾ ԱՊԱՑՈՅՑ ԵՒ ՏԵՍԱՐԱՆ ԳՐՔԷՆ

ԿՇԻՌ ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ ՈՒՆԻՑԻՍ Ի ՁԵՌԻՆ ՔՈՒՄ



ԿՇԻՌ ՆԵՆԳՈՒԹԵԱՆ ՊԻՂԾ Է ԱՌԱՋԻ ՏԵԱՌՆ
(Առակ. ԺԱ. 1)

---

ՁԻ ՈՐՈՎ ՉԱՓՈՎ ՉԱՓԷՔ ՆՈՎԻՆ ՉԱՓՈՎ ՉԱՓԵՍՑԻ ՁԵԶ ՄՏ. Է. 2

Քանզի ՈՉ ԻՆՉ ՕԳՆԵՍՑԵՆ ԳԱՆՁՔ ԱՆՕՐԻՆԱՑ· ԱՅԼ ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆ ՓՐԿԷ Ի ՄԱՀՈՒԱՆԷ ԱՌ. 2: :3

Վասնզի ՈՉ ՍՈՎԱՄԱՀ ԱՌՆԷ ՏԷՐ ԶԱՆՁՆ ԱՐԴԱՐՈՑ ԲԱՑՑ ԶԿԵԱՆՍ ԱՄԲԱՐՇՏԱՑ ԿՈՐԾԱՆԵՍՑԷ

Քանզի ՊԻՂԾ Է ԱՐԴԱՐՈՅ ԱՅՐ ԱՆԻՐԱՒ
ԵՒ ՊԻՂԾ Է ԱՆՕՐԻՆԻ ՈՒՂԻՂ ՃԱՆԱՊԱՐՀ ԱՌ. Լ. 27

---

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ԱՇՃԵԱՆ ԵՈՒՍՈՒՖԵԱՆ ԽԱՆ

— 1[illegible]0 —

# ԱՐՁԱԳԱՆՔ ԳՈՐԾՈՑ

ՏԻԳՐԱՆԵԱՆ ՄԿՐՏԻՉ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

# ՔԱՂՈՒԱԾ ԱՊԱՑՈՅՑ ու ՏԵՍԱՐԱՆ ԳՐՔԷՆ

ԿՇՌՈՒ ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ ՈՒՆԻՑԻՍ Ի ՁԵՌԻՆ ՔՈՒՄ



ԿՇԻՌ ՆԵՆԳՈՒԹԵԱՆ Պ֊ՂԾ Է ԱՌԱՋԻ ՏԵԱՌՆ
(Ա–կ. ԺԱ. 1)

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ա. Մ. ԱՇՃԵԱՆ ԽՈՒՍՈՒՋԵԱՆ ԽԱՆ
— 1880 —

# ԱԶԴ

Սոյն տետրակը որ Ցիզըրանեան Գեր. Մկրտիչ Ս. Արքեպիսկոպոսի վրայօք եղած զրուցատրութիւնները և կրած վշտալի նեղութիւնները կը պարունակէ իւր Ազգացոյց և Տեօոգան Ազգային 30 տեսակ ցուցոց և պատմոց գրքէն առնելով կը հրատարակեմք, զխոցունելով այն ամէն անձանց, որք մինչեւ Գեր. Սրբազանի վրայօք առած տեղեկութիւններնուն սուտ և սխալ ըլլալը, և հետեւաբար ողջամիտ ընթերցողաց կը թողումք դատել խռովիչը, չարասէրը, [illegible] քինապահը և ոխակալը որոնք ըլլալը, և [illegible] ճշմարտութեան ողղասէր անաչառը որոնք են. ի փառս արդարասէր միոյն Աստուծոյ,

Ա. ԱՇՃԵԱՆ

քաղ ի Նարուածո, և ոչ դարձուցանել. զի պարտ է ինձ ի տան սիրելւոյ իմոյ մխիթարել և ոչ յօտարաց յումեքէ

Հարց. Զինչ բանք քո ի ձախն
Պատ. Անտի չունիմք ի յաջն
Հ. Այնոքիք որք կան յաջն
Պ. Բաժինք նոցունց ի ձախն.

Զի մատնեաջիք յազգականաց և ի բարեկամաց և աշխարհի սաստ զնեղութիւն ունիցիք ուրեմն երգեսցուք.

Քոյր ընկերէ Թորոսն համարձին որ չունի աշխարհէ
Նախ դատապարտեա զանձն մերոյ սոցա ձեռն ձեռ կերել:

Արդ լուսպուք

1844 էն մինչև 1870 ազգային հանրապ կրած աշխատութիւններս, արդեամբ և գործով և ատենց փոխարէն տեսած վշտաս և կրած չարչարանքներս և հալածանքներս տես Հայկակ Գործոց Տիգրանեան գրքին, և Գործք Զէյթունի և Զայն Կիլիկիոյ տպեալ ի Պոլիս 1846 69 և 70 ին տետրակներուն մէջ: Ուր որ կենսական խնդիրները լուծուած և ամէն բան պարզուած ճշմարտութիւնը երեւան ելած է: Ու դարձեալ սակաւ ինչ յիշելով զանցելին, և ապա ձեռնարկեմք 1870 ի զանցիցն պատմել: Անուանիկ.

Հոլանդական տուեալ. Երբոր ուղեցինք 1844 ին Քիւրտիստանու ժողովրդոց մէջ ընթերցմունք և գրագրութիւնք, կարգ և կանոնք և կրթութիւնք մտցնելու իսկոյն նոյն տեղւոյն կղերականներէն շատ վշտանք կրեցի և հալածուեցայ, մինչև որ ըստ կարելւոյն սակաւ ինչ նախակրթարաններ, մանկավարժներ մտցուցինք մէ-

ջերմին, տասը տարւոյ ժամանակ, երբեմն գործեցինք և երբեմն դադրեցանք եւայլն. ինչպէս հետեւեալ պատպարիարքի նամակէն ալ կը յայտնուի մեր ըսածները։

Գերապատիւ Սրբոյ.

Գրութիւնք առինք. զի ժողովուրդն, շնորհակալ է զձէնջ և մանաւանդ դպրոցներ հաստատելու և անշահասէր աշխատութեանցդ, զի որով բերկրեցոյց զմեզ և ըզ կրկին ժողովս, և զկրութիւն ազգիս։

Իսկ Մշոյ վանահարց եւայլն. խոչնդոտն լինել բարեկարգ ընթացից ձերոյ ոչ սակաւ տրտմեցոյց զմեզ, անձնապահ լեր առ ժամանակ ինչ ի Մուշ երթեւեկելոյ մինչեւ գրեսցուք առ գերապատիւ Արքեպիսկոպոսն Կարնոյ և Մշոյ։

Արդարեւ բազում վշտաց և նեղութեանց տանիք. իսկ վարձք և հատուցումն անբաւ են յԱստուծոյ և յԱզգային կառավարութենէ, և վարժարանի համար գնածդ գրեանց դրամն Մեծ. Արապեան Գէորգ Աղային դրկէք.

1854 դեկ. 31 ՅԱԿՈԲ ԱՐՔ ԵՊԻՍ.
ի Պատրիարքարան Հայոց Պ. Կ. ՊՈԼՍՈՅ

Վերջապէս որ և լցէ մեծագոյն մասամբ կղերներէն հալածուելով 1858 ին եկի Պոլիս և Ամենապատիւ Գէորգ սրբազան պատրիարք Սամաթիոյ Նոր-Թաղ Գլխադիր սուրբ Յակոբը եկեղեցին քարոզիչ կարգեց. ուր որ ուխտատեղի մի եղաւ հոն ամենայն ազգաց, և ժողովրրդեան բազմութեան մեզ հետ ունեցած համակրութիւնը և ջերմ սէրը, յարուցին մեր վերայ Պոլսոյ ոմանք

կղերները թշնամի , և ժողովրդոցմէ մեզ եկած կամաւոր նուէրք և պարգեւքն ալ , մեր վերայ անհաշտ թշնամի կարգեց ոմանք շահասէր աշխարհականները , երբոր անոնց յուսացած մեզնէ նիւթապէս շահ մի չտեսան , վասնորոյ մեր վերայ շատ մի անուանարկութեան թերթեր և տետրակներ գրեցին և տպելով հրատարակեցին , տակաւին Պօլսէն չելած , մեզմէ յառաջ նախատելի տետրակները և թերթերը դուրս ելան և գնացին :

Եւ իբրեւ 1861 ին մեկնեցայ Պօլսէն գնացի Բալու և Քիւրտիստան , մեզնէ գաղտնի Բ. դուռնէն Կտուց անապատ աքսորուելու հրովարտակ մի հանելով կը ղրկեն Կարնոյ կուսակալին , և մենք ալ նոյն միջոցին Պօլիս կուգամք 1863 ին :

Այս եղելութիւնը լսելով բողոքեցի Ազգային Վարչութեան , երբոր քննութիւնը երկարեցաւ Բ. դուռը կազմեց ազգայնոցմէ մասնաժողով մը որոյ նախագահն էր արդի բարձրաշնորհ Տ. Տ. Գէորգ Գ. սրբազնագոյն կաթուղիկոսն ամենայն Հայոց :

Ուստի նոյն ժողովոյ մէջ ամեն բան պարզուեցաւ , արդարութեամբ ճշմարտութիւնն ճառագայթեց ողորմութիւն և խաղաղութիւն զիրար համբուրելով . Հայելի Գործոց Տիգրանեան գիրքն ի լոյս ընծայուեցաւ 1864 ին որուն մէջ ամէն կարծիք և կնճիռ խնդիրք լուծուեցան , և մեր 18 ամեայ ազգային աշխատութիւնը մի առ մի յայտնուեցաւ :

Ուստի տնօրէնութեամբ վերին տեսչութեան զմեզ կոնդակաւ և Պէրաթիւ Բերիոյ , (Հալէպու) Առաջնորդ կարգեցին , գնացինք ի Բերիայ 1866 Յունիս 1 ին : Եւ Նոյեմբեր 15 ին Զէյթունցիք Լատինկրօն կը լինին , հետեւեալ բարիքը Լատինացոցմէ ընդունելու պայմանաւ.

1. Զորս Զէյթունցի իշխանները Պօլսոյ բանտէն ազատել ։

2. Նոյս ընտանիքը Մարաշէն Զէյթուն երթալ ։

3. Մարաշին մէջ Զէյթունցի չղթայակապ բանտարկեալները արձակել ։

4. Ջրի վարժարաններ բանալ ։

5. Տարեկան արքունի տուրքերնին թեթեւցնել ։

6. Որ և իցէ հարստահարութիւն մի չկրեն ապագային մէջ ։

Յիշեալ չորս խնդիրները կատարեցի, վերջին երկու խնդրոյ համար Բ. դուռն խօստացաւ մ՛եզ առաջիկայ մարտին կատարել. ուստի մեր այս աշխատութեան փոխարէն ազգասէր վսեմ Սիմօն պէյ Մաքսուտեանի շնորհիւ Բ. դուռն արքունի Մէճիտ երորդ նշանաւ, և սրբազան պատրիարքն ալ եպիսկոպոսութեան վկայականաւ վարձատրեցին զմեզ՝ և ձեռնադրուեցայ եպիսկոպոս 1868 սեպտ. 15 ին բարձրապատիւ Տ. Տ. Գէորգ Դ. հայրապետէն ամենայն Հայոց. և եկի ի Պօլիս Գործք Զէյթունի անունով տետրակը տպել ի լոյս ընծայուեցաւ որուն մէջ Զէյթունի բոլոր գործերը գրուած են 1869 ին ։

Ուստի Զէյթունի եղած ծախուց պարտքին հանգանակելու համար Ազգային Վարչութեան որոշմամբ գնացինք Մօլտովլաքիա (Ուլահ–Պուկտան) մինչեւ վերադարձայ եկայ Պօլիս, որպէս թէ մնացեալ 2 խնդիրն ալ կատարել, ինչպէս որ, Բ. դուռը խօստացած էր.

բայց դժբաղդաբար Խրիմեան սրբազան պատրիարքացած մեր հետ առնելութեան ոգով սկսաւ վարուիլ և հալածել զմեզ , ինչպէս որ կը հալածէր . զայլ կղերները որոնք որ ողջամիտ էին :

Հոկտեմբ. երկրորդ : Հանգամանակութեան ժապաւինեալ տետրակը տուին իրեն 3 օր իրեն քովը մնալէն ետքը տուաւ մեզ բոլոր հանգամանակութեան ծախքը ելլելէն ետքը մնացածը տուինք պարտքը , մնաց 8000 դահեկան բաց պարտք , որուն համար կը սպասէի տնօրէնութեան մը , յանկարծ յանձնաժողով մը կազմեց վերստին տումարը մեզմէ առնելով սկսան քննել , երբոր մէկ խարդախութիւն մը չգտան , գոնէ վնաս մը հասցնելու համար պօլսոյ մէջ ըրածս հանգամանակութիւնը գրեցին և ընդունեցին , և եղած ծախքը չընդունեցին , ահա [illegible] հաշիւ մը , այս վնասը մեզ տալէն ետքը , ձեռք զարկաւ ուրիշ վատութիւն մը ընել որ է :

Հոկտեմբ. երրորդ : Ծնունդեան գիշեր , երբոր ժամարար պիտի ըլլայի , իմաց տուաւ մեզ , թէ վրադ բողոք կայ եթէ ժամարար ըլլաք զքեզ տաճարէն վար պիտի քաշեն , ևւայլն , մեք այս մնոտի զրոյցին կարևորութիւն չտալով պատարագեցինք , և ժողովուրդը գոհ սրտիւ մինչ ցվերջը պատարագին կենալով և ապա արձակեցաւ տեղը դնաց , վերջը բողոքագիրը և բողոքը ուզեցինք իրմէ , բայց ոչ բողոքագիր և ոչ բողոք եղած և կայ եղեր , աս ալ այսպէս : Խրիմեան սրբազան առովալ գոհ չըլլալով հետևեալ վնասը մեզ հասցնելու ելաւ :

Հոկտեմբ. չորրորդ : Երբոր Աւագ ուրբաթու գիշեր

և իմ քարոզչութեան եկեղեցւոյ մէջ կտակը պիտի խօսէի Սափրիչեան այսինքն (պէրպէրեան) Տիմոթէոս աբեղան, եկած դասը կանգնէր և լուսարար տէր Սուքիասը մեզ իմաց տուաւ, թէ սրբազանի հրամանը այս է, որ Պէր-պէրէ տղան պէտք կոտրէ խօսք և Զօրկէ պատարագէն ալ պէտք ընէ, մեք ալ շատ լաւ ըսինք, և լռեցինք, վասն զի, նկատեցի Խրիմեան սրբազանի երկու տեսակ դիտաւորու-թիւնը այս բանիս մէջ, Ա. մեք անոր դէմ գնելով, որ նա ալ այսինքն Տիմոթէոս լրբաբար մեր վերայ արձակե-լով և ժողովրդեան մէջ խռովութիւն մը ծագիլ, և Բ. Զատկական ժամուցէն զմեզ զրկել, և որպէս թէ ցաւ մի տալ մեր սրտին: Իսկ Աստուծոյ արդարութիւն նոյն Զատկի կէս գիշերէն սկսեալ մինչեւ ցլոյս արեւուն սաս-տիկ անձրեւ մը բերելով, եկեղեցին մարդ չկրցաւ եր-թալ: Նւ Տիմոթէոս աբեղան ալ մինակ պատարագեց, իսկ զարմանալին այս էր, երբոր Խրիմեան սրբազան ո-մանց եպիսկոպոսաց և ծայրագոյն վարդապետաց կառա-ջարկէ սոյն մեր պաշտօնը վարելու, նոքա կը հրաժարին ըսելով, չէ ճշմարիտ, և օրինաւորեալն, բացի Սափրիչ-եանէ որ ընդունեց:

Հալածանք հինգերորդ: Ասկէց ալ գոհ չըլլալով սրբա-զան Խրիմեան, համոզեց քիւրտիստանցի Խականտար անուն Ճմէկը, մեր վրայ խնդրագիր տալ Բ. դուռը, որպէս թէ մեր վրայ 3000 դահեկան առնելիք ունի, աս ալ Հիւմնի բաշայի ներկայութեամբ սուտ ելլելով մնաց ամօթով: Աս ալ չյաջո-ղեցաւ այս անգամ հաշուատումարս պահել տուաւ, և հրատարակեց Տեգրանեանը վերուցէք, այսինքն գողցէր, ասկէց ալ մէկ խռովութեան ձայն մը ինձմէ չելաւ, որ շատ կսպասէր, բայց իզուր մեր վահանը Յօբայ համբե-

րութիւն էր ։ Անկէց ի զատ սկսաւ չարիվարի գրոհներ. Երուսաղէմայ տունը հաւաքել մեր վրայ չարիվարի գրելու, և յօդուածներ տալ լրագրաց թերթերուն մէջ ։

Ասով ալ գոհ չըլլալով երբոր Բերիոյ Նիկողոս կաթողիկոսէն հեռագիր մի կուգայ մեզ. երբոր չավուշը կը բերէ պատրիարքարան, Յուսեան սրբազան խաբելով չավուշին մեր հեռագիրն կառնու կը բանայ և կը կարդայ ։ Հինգ օրէն ետքը կիմանամք և կուզեմք իսկ ինքը կուրանայ, և հեռագրատունէ ճիշդ պատճէնը կը բերենք, և ապա ամօթով կուտայ մեզ, այս խաբէութեան համար թէ հեռագրատան վերակացուն և թէ երեւելիքն արքունեաց համոզել կը ջանային զմեզ, որ բողոքեմք, առ այս մասին պետութեան, մեք ևս համբերելով զանց առինք. վերջապէս բարձրաշնորհ Յաչատուր կաթուղիկոս զմեզ հրաւիրեց յիւր սենեակ և ըսաւ, եղբայր ատոնք անհոգի և անաստուած մարդիկ են, քեզ մեծ վնասներ պիտի հասցնեն, գիշեր ցերեկ քեզ համար կը խորհին ելլնեթէ ինձ մտիկ կընես թող գնայ ասկից ։

Ուստի օգոստոս 25 չոգենաւ մտայ գնացի հայրենիքս ։

Ըռնէ օտար հողը մէջ չէրթը հալածել ։ Ահաւասիկ. Տիգրանակերտ հազիւ թէ 6 ամսոյ չափ խաղաղ օրեր անցուցինք. Պօլսո Խարբերթցի Սարգիս Վարդապետն տնղապահ յղեցին Յակոբ եպիսկոպոսին վերայ, ուստի ելաւ խռովութիւն մը մեծ, մինչեւ անգամ Միւթասարըֆի առջեւ մին եպիսկոպոս միւսն ծայրագոյն վարդապետ սկսան դատ վարել կառավարական ատեաններուն մէջ զիրար հալածելով ։ Ուստի մենք ալ զմեզ այս խռովութենէն ազատ պահելու համար. գնացինք Բարձրահայեաց վանքն, ուր որ խնդրանօք քանի մը երեւելի ան-

ձանց գիշերօթիք վարժարան մը բանալ վանից մէջ, զի որովհետեւ Բողոքականք վարժարան բացած էին շրջակայ գիւղօրայս. և Օհաննէս վարդապետ Առաջնորդն, այնքան անհոգ անձ մի էր (վարուք որպէս թէ ճգնաւոր) և ոչ մի փոխասաց ունէր վանից մէջ բայց արբեցող միաբանից, որ 18 տարի կը շարունակէր առաջնորդութիւնը, ինչ և իցէ, շատ մը խրատ և յորդոր կարդալէն ետքը առաջնորդին, հազիւ թէ համոզելով այդու պայմանաւ որ վանից իրաւունքէն կամ վանահօրմէն և կամ վիճակէն մէկ դահեկան անգամ չուզել, այլ դուրսէն կամ մեր քսակէն։ Ուստի Խարբերդու վիճակէն 9040 ղրշ. հաւաքելով բերինք Օհաննէս վարդապետին յանձնեցինք որ վարժարանի շինութեան ծախս ընէ, և տուաւ մեզ հետեւեալ անդորրագիրն, և գնացինք ի Տիգրանակերտ, որպէս թէ խռովութիւնը խաղաղացած էր։

Ահա անդորրագրին ճիշդ պատճէնը, որ իսկը քովերնիս կը պահուի.

Գերապատիւ Տիգրանեան Մկրտիչ արքեպիսկոպոս սրբազան հայրը իւր կամաւոր ուխտը սրբոյ Տաճարի ամենօրհնեալ անարատ և միշտ կուսի Աստուածածնի կատարելէն զկնի, որոյ արդիւնքն զորս եբեր վանիցս վաւըն շինութեան ձեմարանին այս է.

1872 ապրիլ 22

| | | | | |
|---|---|---|---|---|
| 2160 | ղշ. | **45** | լիտր | բամպակ |
| 1136 | » | **12** | » | » մանած |
| 250 | » | **7** | զոյգ | խարար |
| 4158 | » | | ողջ | դրամ |
| 756 | » | **350** | տրամ | արծաթ |
| 8460 | | | | փոխադրելի |

8640 ղշ. փոխադրեալ
598 բամպակի և խարբերթի ծախքերը
9058

Օսմանցի ոսկին 118 ղշ. էն հաշուեալ ընդունեցինք
Սոյն ինն հազար յիսուն ութը դահեկանն ճեմարանի շինութեան .

Ուստի ի միամտութիւն նուիրատու ժողովրդոց Խարբերթու և ի հաւաստիմութիւն յիշեալ բազմերախտ սըրբազան հօր ստորագրեմք սոյն հաշուեցուցակ անդորրագիրն :

Առաջնորդ Բարձրահայեաց վանից և վիճակին
ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. Տ. ՊՕՂՈՍԵԱՆ

. .

Երբոր վերոյիշեալ արդիւնքը առաւ , ուրախանալով իսկոյն շրջաբերականի օրինակ մը գրեց , ցոյց տուաւ մեզ ոչ այնքան վարժարանի համար , որքան վանից անուամբ շահ և օգուտ կը փնտռէր : Ինչպէս որ շրջաբերականի վերջին տողերուն մէջ կերեւի , որ ատ շրջաբերական ալ Ցամիթ տպել տուաւ 5 հարիւր օրինակ և հրատարակեց : Ահա պատճէնն .

Օրհնութիւն և ողջոյններ գրելէն ետքը . . . նշե .
հիմակուց իմաց տալուս պատճառն այս է , ով ոք իւր տղայն տալու միտք ունի հիմակուց մեզ իմաց տայ , և ճեմարանի շինութեան համար եթէ բարեհաճի նուէր մը և յիշատակ մը ընելու ըլլայ , կը խնդրենք ժամ յառաջ ղրկելու շնորհք ընեն . . .

ի Վանս Բարձրահայեաց — Առաջնորդ ՅՈՎ. Վ.
1872 մայիս 1 — Տ. ՊՕՂՈՍԵԱՆ

Իսկ մեք Տիգրանակերտու մէջ նստելով, կսպասէի վարժարանի չինութեան լուրը առնել, մէկ քանի ամիս անցաւ, իմացայ որ Օհաննէս վարդապետ դրամը իւր կամաց ծախս ընել սկսէր ։ Ուստի սրտնեղութեամբս իսկոյն տիւրկէր Պետրոսը և Գրագրը առի գնացի վանք ձեռք զարկինք, նախ 20 տղայի համար ննջարան. նստարան, և գրասեղան չինել տալ, մինչեւ որ ասոնք չինուեցան հազար ու մէկ խօսք խօրաթա և արգելքներ տիւրկերներու գլխուն հանեցին, երբոր կարգն եկաւ որ վարժապետ բերել և տղայք հաւաքելու, որքան որ Տիգրանակերտու Յակոբ եպիսկոպոս և Օհաննէս վարդապետ ե- [illegible] էին. իսկ վարժարանը չբացուելու համար միաբանեցան որովհետեւ եպիսկոպոսը 25 տարուան և Օհաննէս վարդապետը 18 տարուան առաջնորդք էին, տակաւին վարժարանի մը հոգ չէին տարած, իսկ մեր աշխատութիւնը անոնց ամօթ պիտի բերէր, վասնորոյ ըսպիտակ թուղթի վերայ ստորագրութիւն և մօհր գնել տուին տգէտ մարդկանց մեզնէ գաղտնի, զոր ինչ դրեցին, գրեցին, յղեցին Խրիմեան սրբազանին, նա ալ աւանց բացատրութիւն ուզելու հետեւեալ գիրը կուղղէ մեզ ։

Գերապատիւ սրբազան եղբայր ի Քրիստոս

Այս միջոցիս առածնուս լուրերուն նայելով Արղնոյ վանուց մէջ վարժարան մի կանգնել ուզած էք, ուստի խռովութիւն ծագեր է, մեկնիք անտի եւ թաք Մշոյ սուրբ Քհաննէսու վանքը, հոն մնաք մինչեւ ցնոր անօրինութիւն ։

1872 սեպ. 12 Պ. Կ. Պօլսոյ

թիւ 155

ՄԿՐՏ. ԵՊԻՍ. ԽՐԻՄԵԱՆ

*Աստր պատասխանին գրեցի*

*Առանց քննութեան և բացատրութիւն առնելու ո՞ր օրէնք կը հրամայեն դատապարտութեան վճիռ տալ, կը խնդրեմ արդարութենէ չզատուիլ քննութեան հետևւիլ։*

1872 *սեպ.* 28 **ՄԿՐՏ. ԵՊԻՍ. ՏԻԳՐԱՆԵԱՆ**

*Զգեցի վանքը, ըսելով. Բոզեալ լէջէ ձեղ տատն ձեր տաերակ եկայ Տիգրանակերտ և Նստայ տեղս։ Հետեւեալ նամակը եկաւ։*

*Գերապատիւ սրբազան եղբայր ի Քրիստոս*

*Ակէց յառաջ սեպ.* 12 *թիւ նամակաւ ծանուցինք ձեզ երթալ Մշոյ վանքը, մինչ ցարդ տեղդ էք, և չի ներուիր ձեզ այդպիսի գործոյ վարժարանի ձեռնարկ ըլլալ, բարեհաճիք անխաբան Մշոյ վանքը երթալ։*

1872 *նոյ.* 6. *թիւ* 244 **Պ. Կ. ԽՐԻՄԵԱՆ**

*Գրեցինք ատոր պատասխանը։*

*Իմ կարօղութենէս վեր է այս ձմերան Մշոյ լեռները երթալ, ես իմ տեղս թարց պաշտօնի նստած եմ, քանի որ սուտը ճշմարտութեան գոյնով ներկուած կընդունիք. քննութեան չէք հետեւիր, միայն կիրք և ատելութիւն կը տեսնամ։*

1872 *դեկ.* 14 **ՄԿՐՏԻՉ. Ե. ՏԻԳՐԱՆԵՆ.**
*ի Տիգրանակերտ*

Դարձեալ նամակ մը եկաւ

Գերապատիւ սրբազան եղբայր ի Քրիստոս

Ազգային վարչութեան որոշումը յարգելով անմիջապէս փութաք երթալ Մուշ սուրբ Օհաննէս վանքը, և հոն սպասել մինչև ցնոր տնօրինութիւն ։

1873 մարտ 14 ԽՐԻՄԵԱՆ Պ·

՝ի Պատր· Հայոց

Պատասխանեցի ·

Մինչև որ դատախազս ո՞վ էնէ, ինձ չը յայտնէք քննութիւն չըլլուի, յանցանքս չգիտնամ· տկարութիւնս չի ներէր կամաւս այս ձմերան Մշոյ ձիւնաւոր սառուցեալ լեռները ողջունել, ներեցէք մեզ խաղաղ տեղս մնալ ։

1873 ապրիլ 30 ՄԿՐ· Ե· ՏԻԳՐԱՆԵԱՆ

Աստր պատասխան չտալով Բարձրագոյն դրանէ հեռագիր մի Տիգրանակերտու կուսակալին կուգայ, զմեզ Մշոյ վանքը ղրկելու համար, ուստի սեպ· 10 ելի Տիգրանակերտէն, եկի Մակաբայեցւոց վանքը, և անկից հոկ· 30 ին Սղերդ, Բաղէշ, ի Մուշ · սուրբ Կարապետու միաբանութենէ հրաւէր գալով տարին զմեզ վանքը · վիճակէն եկած քահանայացուները ձեռնադրել տուին, և նոյնպէս Մանրավանից, սուրբ Ախբերկայ, և Մատին Առաքելոյ և Թարգմանչաց, վանօրէից, վանահարց և Մշոյ փոխանորդէն և վիճայնոյ վկայականօք շատ քահանայացուներ ձեռնադրել տուին · ձեռնադրեալներն ալ

է որ մի ոսկի և է որ երկու և է որ երեք ժամոց տուած են մեզ. շատ քիչ կը գտնուի 3 ոսկի կամ 2 տուօղ բայց Մշոյ մէջ սովորութիւն կայ եղեր, մէկը որ քահանայացուները քահանայացունելու համար նորա ընծայ մի կուտան եղեր. առ ձեռնադրող եպիսկոպոսն բարեխօսելու համար։ Մեր մեծ յանցանքը այս եղեր է, որ վանահարց վկայականը բաւական սեպելով ձեռնադրեցինք։ Եթէ յառաջմանէ գիտցած ըլլայի, պիտի ղրկէի անոր ընծայատուներ, որ ղրպարտութեամբ լեցուն սուտը ճշմարտութեան գոյնով չը ներկուէր պատրիարքարանի մէջ գտնուօղ թշնամիներուս դար, այո՛, թշնամիներ, եթէ թշնամի չէին մեզ, պէտք էր մեզմէ բացատրութիւն ուզել և քննութեան հետեւիլ, բայց ոչ այնպէս ըրին, այլ և, բոլոր սուտերը ճշմարտութեան գոյնով ներկուած սուրբ Էջմիածին կը ղրկեն ի Պատրիարքարանէն։

Ուրեմն սպասեմք սուրբ Էջմիածնի գահէն գալիք վճռոյն։

Հիմայ մենք Մշոյ դաշտի ձիւնէն, ո՛չ կրցանք վանքին մէջն երթալ, և ոչ Մշոյ քաղաքն, մնացինք խոնաւ դաշտի գիւղօրէից մէջ մինչեւ ցմայիս, եկանք 'ի Կարին, իմացանք Խրիմեան սրբազանի անկումը, և մեր ձայն Կիլիկիոյ տետրակին մէջ գրուած գուշակութեան ի կատարումն սկսիլը, գրեցի շնորհաւորութեան գիրը նոր պատրիարքին, և ընդ նմին վարչութեան խնդրագիր, երթալ ի վանօրայս Վանայ ուխտագնացութիւն և օդափոխութիւն, և եթէ պատեհութիւն գտնամ միտք ունիմ սուրբ Էջմիածին երթալ, 1874 յուլիս 2. գիրը գնաց Պօլիս 4 օր ետքը ծնկացաւ մը պատահելով մինչեւ սեպ. 20 առողջութիւն չգտայ և բժիշկներերն ալ անօրինեցին մեզ խոնաւ երկիր չմնալ, երթալ Ուրֆա

Հալէպ, Տիգրանակերտ, որ չունին խոհեմութիւն, ուստի պատրիարքարան գրած նամակիս պատասխանը չառած գնացի Տիգրանակերտ, սկսայ անկողնոյ ծառայել. ըսինք զիրար հալածել օտար հողի մէջ հալածումն մեծ, ուր ոչ այլ ուրէք այլ է հաւատոց Յունացեալ հայացեալ խառնուրդ կղերականաց մէջէ: Յուլիս 2 ին գրիս պատասխանը հոկտ. 18 ին եկաւ ձեռքս հասաւ:

Գերապատիւ սրբազան եղբայր ի Քրիստոս

Ձեր գերապատուութեան Վանայ վանօրայք երթալ չըլլար ուղղակի սուրբ Էջմիածին պէտք է որ երթաք. ահա առ վեհափառ սրբազան Հայրապետին ալ յանձնարարական գիրն ներփակեալ գրովս ձեզ ուղղեցինք:

1874 սեպ. 18 — Պ. Կ.

Թիւ 889 — ՆԵՐՍԷՍ ԱՐՔԵՊ.

Տակաւին ծնկացաւօք կը տագնապէինք, պատրիարքարանէն մեր վրայօք գրուած գանգատին պատասխանը սուրբ Էջմիածնէն կուգայ, և Պատրիարքի փոքր նամակաւ կոնդակին պատճէնը մեզ կուգայ. որ է հետեւեալն:

Առ սրբազան պատրիարք Կ. Պոլսոյ

Տ. Ներսէս Արք եպիսկոպոս

Գէորգ ծառայ Քրիստոսի . . . եւայլն սիրելւոյ մերում խնդալ ի Տէր:

Ընդ գրութեան ձերում առաքելոյ առ մեզ 12 յու-

լիս ամսոյ տարւոյս ընդ համարաւ 453 հասին ի ձեռս մեր թուղթքն քննութեան (որ բնաւ երբէք իմ մասին քննութիւն եղած չէր, և չէին ընէր որչափ որ կը բողոքէի,) եւ պատճէնք պէս պէս գրուածոց յաղագս Երեմիայ և Մկրտիչ եպիսկոպոսաց ամբաստանելոց իբրեւ զակատեալս զհետ կաշառաց և ապօրինաւոր ձեռնադրութեանց ։

Ընթերցեալ մեր զգրուածսն զայնոսիկ գտաք զնոսին թերակատարս ըստ բազում գլխոց · իբր զի չտեսաք ի նոսին բացատրութիւնս մատուցեալս յամբաստանելոց անտի երկոցունց եպիսկոպոսաց առանձինն յօդուածովք համդէպ միոյ միոյ յամբաստանութեանց անտի նշանակելոց ի տեղեկագիրսն մատուցեալս ի հարցաքննողաց և ի հարցաքննելոց ։

Այնու ամենայնիւ այս ինչ յայտնի է զի եպիսկոպոսունքն այնոքիկ եկեալք երբեմն այսր վկայագրովք պատրիարքին Կ. Պոլսոյ Պօղոսի արք եպիսկոպոսի, արդ ի Տէր հանգուցելոյ և հանրագրական խնդրուածովք ժողովրդոց վիճակացն Խարբերթու և Բերիոյ, ձեռնադրեցան առ ի մէնջ ի վերայ վիճակացն այնոցիկ ։

Յայնժամ իսկ պարտաւորեցին նոքա զանձինս իւրեանց վաւերական խոստմամբ ըստ օրինակի այլոցն եպիսկոպոսաց առ՛ ի մէնջ ձեռնադրելոց չձեռնադրել երբէք զտգէտս և զանարժանս ի պաշտօնութիւն եկեղեցւոյ և ոչ կատարել բնաւ ձեռնադրութիւնս արտաքոյ վիճակի իւրեանց ։

Սակայն որպէս երեւի ի քննական գրուածոցդ մին ի նոցանէ այն է Երեմիայ . . . իսկ միւսն որ է Մկրտիչ եպիսկոպոս Տիգրանեան, ճգնի ապացուցանել և հաստատել, որպէս երեւի ի նոյն գրուածոյ, թէ հրամանաւ

*Առաջնորդաց վարդապետաց և վանահարց արարեալ իցէ ձեռնադրութիւնս այնպիսիս ։*

*Քաջայայտ իսկ է ձերում խոհականութեան, զի զի յորժամ հովիւք եկեղեցւոյ և Պատրիարքարան ինքնին յանհոգս կան, և կամ պատճառս տան, իւրք իրօք խանգարման եկեղեցական կանոնաց. եւս քան զեւս յաճախեն զեղծմունք և անկարգութիւնք այսպիսիք ։*

*Յորոց մին և այն է զի եպիսկոպոսն Երեմիայ . . . եւայլն ։*

*Իսկ Տիգրանեանեան եպիսկոպոսն որպէս լու եղեւ մեզ թէպէտ և գնալ գնայ զառաջինն յիւր, բայց ապա պատճառելով զպատճառս ինչ, որք ցարդ եւս զանխուլ մնան առ ի մէնջ. մեկնեալ ի բաց երթայ ի սեփհական վիճակէն և աստանդական թափառի. (թող ներռմի մեզ այս տեղ ըսելու. մեք պատրաստուեցանք ի Բերիայ վիճակս երթալու Խրիմեան սրբազան իսկոյն լրագրաց թերթով զմեզ պաշտօնէ անկեալ հրատարակել տուաւ.)*

*Արդ այս ամենայն անկարգութիւնք որպէս և սիմոնական ձեռնադրութիւնք, արդարեւ իսկ դատապարտ առնեն զանկարգ գնացս երկոցունց . . . . բայց զի և ներկայ քննութիւնքդ թերի էին և անբաւականք ի պատուհասել զնոսին . . . եւայլն ։* *Թիւ* 305

1875 *հոկտ.* 8 — ԳԷՈՐԳ Դ. ԿԱԹՈՂ.

*ի Սբ. Էջմիածին* — ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

*Երեմիայ եպիսկոպոսն արդար թէ մեղաւոր ես չեմ գիտէր ։* Բայց իմ վերայօք եղած զրպարտութեանց դէմ բողոքեցի, *և բողոքանացս գրերը պատրիարքարան լցուեցաւ, իսկ ոչ մին կրօնական ժողովոյ անդամոցն կրցաւ մեզ պատասխանել, թէ՛ այսպէս կամ այնպէս,* հապա ի՞նչ

**ըլլի** ; ոչ այլ ինչ , **ամէն մէկը** հակառակ իւր սուրբ կոչման և արդարութեան , լռեցին և խոտորեցան զասուն ճշմարտութեան գոյնով ներկողին հետ , ներկեցին և ղրկեցին ի սուրբ Էջմիածին , իսկ **արքեպիսկոպոսը** պատասխանեց թէ , **անբաւականէ և նեղէ են ընդունելութեան** . ինչ և իցէ , ատ հալածանքն ալ անցաւ :

Եղաւ որ 1874 սեպ. 4 Փիլիպպոս վարդապետ եկաւ Տիգրանակերտ , և 1875 փետր. 20 ստիպուեցաւ պատճառէ մի առժամանակեայ կերպիւ քաղաքէն մեկնիլ , ( հոս տեղ պատճառն ինչ ըլլալը մեզ հարկ չէ բացատրել , քանզի իրեն հետ կը չրջի ուր որ երթայ : Ուստի հետեւեալ նամակը մեզ կը յղէ :

Գերապատիւ սրբազան հայր .

Մեր Արղնի երթալոյ առթիւ Ազգ. ընդհանուր ժողովն իւր 13 րդ. նստովն քուէարկելով զՁեր Գերապատուութիւն մինչ ցգալուստ մեր փոխանորդ ընտրեց , ընդ նորին ընդհանուր ժողովոյ հրաւիրանաց , նա և մեք թախանձանօք խնդրեմք որ հաճիք ընդունիլ այդ պաշտօնը , քաջայոյս եմք չմերժել այդ ազգօգուտ առաջարկն ձեր ազգասիրութեանը :

1875 փետր. 25 — Տեղապահ
ի Տիգրանակերտ — ՓԻԼԻՊՊՈՍ ՎԱՐԴ.

Ես ընդհանուր ժողովոյ հրաւիրանաց գիրն ալ , ատոր յար և նման : Ատենադպրութիւն

Ատենապետ — Ատենադպիր
**Թովմաս Մէնտիկեան** — **Յովհաննէս Գոլոլըպաշեան**

**Մենք** հրաժարական տալով չուզեցի . պատճա՞ռ

ծնկացաւս , ուստի վերստին գաւառական ժողովը, քաղաքին բոլոր երևելիները և բոլոր ժողովականները միաբան բերին հետևեալ գիրը տուին մեզ ։

Գերապատիւ Սրբազան Հայր ,

Գաւառական ընդհանուր ժողով ձեր տէրութիւնը ընտրեալ օր հրաւիրեց քաղաքիս առաջ. առաջնորդութեան պաշտօնը վարել , բայց հրաժարականով բացասական կարդացեր էք, ձեր տկարութիւնը պատճառ ունելով , և այս իրաւամբ . սակայն այժմ ժողովս բոլոր խումբ խնդրելով կը խնդրեմք ի սէր ազգութեան հրամել գալ առժամանակեայ պաշտօնը վարել ձեր խոհեմ ընթացիւք ։

1875 փետր. 26 Ստորագրութիւն 51

Մեծ պահոց սկիզբէն սուրբ Զատկի կիւրակէին պաշտօնը վարեցի , Փիլիպպոս վարդապետ եկաւ մեզ հեռացաք պաշտօնէն տեղս նստայ ; որ և իցէ ձեռնամուխ չեղայ գործիմի . թէև կը հրաւիրէին . իսկ Փիլիպպոս վարդապետ որ միշտ անգիտութեամբ կը գործէր ապագայն չմտածելով , անկէց իրեն ազգայնոցմէ որչափ յորդոր կը խօսուէր ապագայն մտածել , իսկ ինքը ոմանց երիտասարդաց առաջնորդութեամբ գործել և մտիկ ընելուն , պակասութեան մէջ կը գտնուէր և շատ անգամ իրեն նպատակին չհասնելուն համար , կը կարծէր զմեզ իրեն հակառակ և գործոյն արգելք , բայց չէր խորհէր իրեն բռնած ընթացից վնասակար ըլլալու վրայօք , այլ և զմեզ պատճառ բռնելով սկսաւ մեր վրայօք բերանը եկածը խօսիլ մեր բացակայութեան և ատեանի մէջ , իսկ մեզ լուր կը բերեին մեզ զանց առնելով չէինք լսեր , ե-

ղաւ որ այդ քանով չբաւականալով Պատրիարքարան կը գրէ մեր վրայօք ։ Ուստի Պատրիարքարանէն սկսաւ նամակ գալ թէ Պոլիս եկուր ։

Ա. Հեռագիր .

Տիարպէքիրտէ Տիգրանեան Մկրտիչ էֆէնտի

Պազը խերլու իշլէր իչուն սէրիան Տէր-Ալիէյէ կէլէսին ։

1291 Հազիրան 12 [illegible]

Նամակ Ա.

Գերապատիւ սրբազան եղբայր ի Քրիստոս

Անկէց յառաջ հեռագրով ուզած էինք զձեզ ի Մայրաքաղաքս գալ , հեռագիրը համառօտ էր , հետեւաբար անկարող բացատրել մեր հրաւիրման շարժառիթն ու նպատակն , այս անգամ կը փութամ նամակաւս կրկնել մեր նախորդ հրաւէրը , յայտնելով թէ , կարեւոր պատճառներ կան , որ կստիպեն զմեզ Ձեր գերապատուութեան հետ անձամբ խորհրդակցիլ , տնօրինել և կարգադրել ինչ որ վայելուչն է ; և օգտակար Ձեր և Ազգին համար.

Քաջայոյս եմք որ սոյն նամակս ստանալուդ առանց վարանելու Ձեր ուղեւորութիւնը կը փութացնէք անկակած լինելով ։

Գ. Կ. Պօլսոյ

1875 Հոկ. 10 ՆԵՐՍԷՍ ԱՐՔԵՊ.

Պատասխանեցի

Ներեցէք այժմ հիւանդ ըլլալովս չեմ կարող գալ , Ձեր

որբազնութեան խորհած և տնօրինածը ինձ համար ըն- գունելի է , իսկ ողջմնալուս պէս անպատճառ պիտի գամ

ՄԿՐՏ· ԵՊ· ՏԻԳՐԱՆԵԱՆ

Բ· Հեռագիր·

Տէօրդէօլեօ Մէլլէն դէյինիօ օլան մուհաջանն տաֆի իչիւն Խոտամպօլա կէլմէնիզ մէճլիսճէ գարար վէրիլմիշ տիր Թէլէկրաֆ Թարըղընտան 10 կիւն զարֆընտա եօլա չըգմանըզ , չըգմատըղընըզ հալտէ մէսուլիյէթի ազիմէ Թահտընտա· գալաճաղընըզ խիւթար օլունուր , Թէլէկ- րաֆըլա ճէվապընը վէրէսինիզ ։

92 Քանունու սանի 28 Նէրճէնէ Փոստէլէ

Հեռագրեցի

Նըմըաղլէ օլտուղէմ ըմըընըզը պիլտիրմիշիմ· գըշըն չիտ- տէթինտէն եօլա չըգամամ· մուսաատէնիզլէ մարտ տօ- գուզունտա եօլա չըգարըմ մէքթուպում եօլտա տըր ։

Մուհարրէմ 16 Մկրտիչ Եպիսկ·

Մինչ ցայս վայր լսեցիք եկած գրերը և գացած պա- տասխանները , արդարութիւն որ կողմ ըլլալը յայտնի կերեւի , ուրեմն անկէց ետքը եկած գրերուն մտիկ ընենք

Եւ նամակ մի ալ գրեցի բոստայիւ այսպէս ·

Ամենապատիւ սրբազան հայր ·

Տիգրանակերտ իմ երեալն խռոված չէ երբէք , եթէ այսպիսի գանգատ մի կայ իմ վրայօք , գանգատանաց

*նամակին կամ հանրագրին պատճէնը շնորհք ըրէք մեզ տեղս դառնալու և «ադա Պօլի» ֆամէ եւայլն ։*

*Ասոր պատասխանը հետեւեալը առինք այսպէս ․*

*Թելէկրաֆը ալտըղըմըզտա տէր հայ Տիարպէգիրտէն չըգըւպ Ըստամպօլա կէլմէնիզ գաթիէն իխթար էտէրիմ․*

92 *մարտ* 11 *Էրմէնի Քօմիթէսի*

*Այս հեռագիրը առնելուս ամենայն տկարութեամբ եկայ Խարբերդ և հեռագրով իմացուցի Խարբերդ գալ և տկար ըլլալս, 15 օրէն ետքը ելայ Խարբերդէն եկայ Մալաթիա, և ապա հետեւեալ հեռագիրն եկաւ ։*

*Խարբերտա գալմայըղ վէրիլէճէք գարարա տէկին Բալուտա իգամէթ իչին օրայէ կիթմէնիզէ գարար վէրիլմիշ տիր ։*

92 *նիսան* 15 *Էրմէնի Քօմիթէսի*

*Մալաթիայէն եկայ Ակն որ երթամ Բալու, իսկ Ռուսիոյ պատերազմի պատճառաւ ճանապարհները յետինատիճան խառնակ և աւազակներէն պաշարուած ըլլալով Ակնեցիք զմեզ առաջնորդ կը խնդրեն ըլլալու, մենք չենք ընդունիր, վերջը վանքը նստել վանահայրութիւնը կընդունինք, այդու պայմանաւ որ՝ պատրիաքարանէն մեզ կոնդակ բերեն ։*

*Ահա Ակնեցոց խնդրագրին պատճէնը ․*

*Սրբազան Հայր*

*Առաջարկուեցաւ ձեզ Ակնայ վիճակին առաջնոր-*

դութեան պաշտօնը և չընդունեցիք , իսկ վանահայրու-
թեան պաշտօնին գալով խնդիրքնիս չպիտի մերժես , զի
որովհետեւ բոլոր վիճակայնոց փափաքելի խնդիրը այս է
Ձեր սրբազնութեան,գոնէ վանքը միալ վանահայրութեան
պաշտօնը վարել ; և ընտրեցաք զՁեզ վանահայր սուրբ
Փրկչայ վանիցս և գրեցաք ի Պատրիարքարան , յուսամք
մերձ աւուրս գալուստ վանահայրութեան կոնդակին •

Ստորագրութիւնք ,

Վանական խորհրդոյ : Համագրի 158

187 Յունիս

Իսկ պատրիարքարան Ակնեցոց խնդիրը մերժելով
չի հաստատէր , ուրեմն ըսեմ• կեցցէ պատրիարքարանի
կիրք և ոգին ատելութեան որ վասն իմ :

Ռուսի հետեւեալ Նամակը կուգայ :

Գերապատիւ Ս. եղբայր ի Քրիստոս :

Ջնքուշի ժողովուրդն համրագրութեամբ կը խնդրեն
զՁեր գերապատուութիւնը , կեդր. Վարչութիւն արժան
դատեց թոյլտուութիւն ընել Ձեր գերապատուութեան ,
երթաք ի Ջնքուշ առանց առաջնորդական պաշտօնի հո-
գեւորապէս մխիթարել զՋնքուշի ժողովուրդը և հոն միալ
մինչեւ յնոր տնօրինութիւն :

1876 օգոս. 10 Պ. Կ. ՆԵՐՍԷՍ

Աստ ալ պատասխանեցի • Ջնտող Թէմբրիէքեան է
առանց Էմիր Սամիյի արքունի հրամանագրի չեմ կարող
երթալ և մանաւանդ առանց պաշտօնի :

Դարձեալ մանակ մի եկաւ ։

Գերապատիւ եղբայր ի Քրիստոս ․

Ձեր Ակնայ վիճակին մէջ միայ տեղիք չունի ․ եթէ Ջնքուշ երթալ չուզէք փութայք ի Պոլիս գալ , և կամ ի սուրբ Էջմիածին գնալ , ապա թէ ոչ ձեզ համար կըստիպէք վարչութիւնը ազգու միջոցներու դիմելու ։

1876 հոկ․ 14 Պ․ Կ․ Պոլսոյ

ՆԵՐՍԷՍ ԱՐՔԵ․

Այս միջոցին Ջնքուշէն , յատուկ հետեւեալ հանրագիրը եկաւ ։

Գերապատիւ Տիգրանեան սրբազան հայր ․

Լուաք ի Տիգրանակերտէն մեկնիլ դէպի Պոլիս երթալդ , մեք բոլոր Ջնքուշի գաւառական ժողովս և համայն ժողովուրդք կը խնդրենք զձեզ մեր վիճակին Առաջնորդ և Պոլիս ալ պիտի գրեմք եւայլն ։

1876 ապրիլ 28 Ստորագր․ 103

Աստ ալ պատասխանեցի ։

Իմ կամքս չէ եթէ Պատրիարքարան հաճի ես ալ կընդունիմ ․ բայց Պատրիարքարան մերժեց մեզ պաշտօն տալը ։

Նոյնպէս Չմշկածագի գաւառական ժողովը և բոլոր վիճակայինք հետեւեալ հանրագիրն մեզ կը յղեն ․

Գերապատիւ սրբազան հայր

Գաւառական ժողովս զՁեզ առաջնորդ ընտրեց վի-

ճակիս Չմշկածագու, խնդրեմք ընդունել զխնդիրս մեր տալ զհաճութիւն զի գրեսցուք ի Պատրիարքարանս ։

Սուքաւէրդեանք 103

Ասոր պատասխանը դրեցի.

Եթէ Պատրիարքարան հաճի ես ալ կընդունիմ եւայլն։

Պատրիարքարան ալ մերժելով կը պատասխանէ. Տիգրանեանին պաշտօ չկայ տալու, ղօրծօ, չի՛ք պատճառ Բօշէ կէլէծ և ասէլուբեան. ուստի եկայ քաղում նեղութեամբ ճանապարհի ի Սեբաստիա, ձմեռը վերա գալով մնացի ի սուրբ Սարգիս եկեղեցի քաղում պատուով, և գրեցի վերատին գիր առ սրբազան Պատրիարքն թէ պատճառն ի՞նչ էր զմեզ ի Տիգրանակերտէն հանելով եթերուն կը թողուք, և ոչ վիճակ մի տալ կը բարեհաճիք արդ մեզ պաշտօնով տեղ մի ցոյց տալ կը խնդրեմք եւյլն։

Ասոր պատասխանեցին մեզ հետեւեալ նամակովն։

Գերապատիւ սրբազան եղբայր ի Քրիստոս

Ձեր փետրվար ամսոյ 2 թիւ նամակը մատուցաւ կրօնական ժողովոյ ուշադրութեան ըստ որոշման նոյն ժողովոյ յայտնել Ձեր Ս. եղբայրութեան, ուր որ էք հոն մնաք, եթէ յարմար տեղ մի պատահի ու պաշտօն մի լինի ձեզ իմաց տրուիլ թէութեամբ ։

1878 մարտ 6

Խորհրդական Պ.

ԽՈՐԷՆ ԵՊԻՍ.

Դարձեալ պատասխան գրեցի.

Աչնեցիք, Չնթուղցիք Չմշկածագցիք, զմեզ ինքեանց առաջնորդ կը խնդրեն, մեք հաճութիւն տալով, կը յանձնեմք պատրիարքարանիդ կամաց, և կը մերժուի խնդիրըն. եւայլն. և հիմայ ալ գրածէք մեզ, եթէ տեղ մի

ըլլայ ձեզ իմաց կը տրուի, ուրեմն կը պատրաստուիմ իմ հայրենիքս Տիգրանակերտ երթալ, և կամ Պոլիս գալ ։

Ասոր ալ պատասխանը կուգայ հետեւեալը ։

Գերապատիւ Ս, եղբայր ի Քրիստոս

Ապրիլ 4 ձեր նամակը զոր ուղղեալ էիք Առ ամեն. Ս. Պատրիարք հայրն, Ազգ. կեդր. վարչութեան կրօն. ատենին մէջ նկատողութեան առնելէն յետոյ որոշուեցաւ գրել Ձեզ, առ այժմս ո՛չ Տիգրանակերտ կրնաք երթալ և ո՛չ այլ ուր, այլ պէտի մնաք հոն ուր որ էք, մինչեւ ցնոր տնօրինութիւն ըստ Աստուածային կամաց և յաջողութեան ։

1878 մայիս 14 — Խորհրդական Պ. ԽՈՐԷՆ ԵՊԻՍ.

Աս ալ այսպէս ։ Սեբաստիոյ օդը մեզ հիւանդացոյց, ելի եկի Ամասիա, և անկէց Սամսոն, հետեւալ հեռագիրը եկաւ

Մարսըւանտա գալասըն փոսթա իլէ մէքթուպիմիզէ պէքլէյէսինիզ

94 Թշրինի սանի — Էրմէնի Քօմբէնէ

Ուստի ստիպուեցայ մնալ Սամսոն մինչեւ որ հետեւեալ նամակը եկաւ ։

Գերապատիւ Ս. եղբայր ի Քրիստոս

Ձեր հանգստութեան համար որոշեց ժողովն Ս. Էջմիածնայ վանքը երթաք, առանց բնաւ պատճառներ մէջ բերելու հպատակիք և երթաք ի սուրբ Աթոռն ։

1879 ապրիլ 10 — Փոխանորդ Պ. ՄԱՏԹԷՈՍ ԵՊԻՍ.

Մինչ ցայս վայր, տեսաք Պատրիարքարանէն եկած գրերը որչափ իրարու հակառակ. առաջին հեռագիրը կը հրաւիրէ զմեզ ազգայնոց օգտին համար խորհրդակցելու Լայըն տես 114 երեսն, և երկրորդ հեռագիրը զմեզ խռովարար ցոյց տալով, եւ տեղեդ եկուր Պօլիս որ տեղդ խաղաղի. եւայլն տես երես 115: Երրորդ հեռագիրը կը հարկադրէ ժամ յառաջ Տիգրանակերտէն ելլել. տես 116 երես:

Ծնկացուոյս պատճառաւ կարգիլուիմք քաղաքէն ելլելու վաղ ընդ փոյթ, ուստի թշնամին անհանգիստ ընելով սրբազան Պատրիարքը. որ մեր բազմաթերթ բողոքագրերն լսել չտալէն ի զատ, կը թելադրէ ստիպմամբ Ի. Դրան զմեզ խռովիչ ցոյց տալ և հետեւապէս արքունի հեռագրով տեղւոյն կուսակալին հրաման յղել կուսան թէ առ խռովիչը դուրս հանել Պօլիս ղրկել. իսկ հին և նոր Կուսակալք Ի դրան կիմացունեն թէ խռովիչն Տիգրանեանը չէ այլ Փիլիպոսն է, և Ի դուռըն ալ Սրբազան Պատրիարքին երբոր կիմացնէ, իսկոյն դարձեալ Ի դուռը կը որաչեն գրել. և կը գրեն. թէ Փիլիպոսը չէ այլ Տիգրանեանն է, պէտք է Տիգրանակերտէն հեռացունել զանի, տես Մասիս թերթին 1792 թիւն ուր որ ընդարձակ գրած հրատարակուած է: Ի դուռը եւս վերստին կը հեռագրէ, Տիգրանակերտու կառավարութեան թէ Ս Պատրիարքն կը պնդէ թէ խռովիչը Տիգրանեանն է. Կառավարութիւնը զարմանալով վերստին կը հեռագրէ թէ Տիգրանեանը չէ այլ Փիլիպպոսն է այս անգամ Ի դուռը Ս. պատրիարքին հաղորդելով, ալ ինչ ընեն. որ Տիգրանեանը վնասուի. ուրիշ հնար չկայ մինակ միջոց Ցունաց Ս. Պատրիարքին ձղենք առ քննութիւնը, որ նորա մին եպիսկոպոս հոն կաթուածով

անդամալուծութեամբ յանկողնոյ կը ծառայէ և 30 տուն ժողովուրդ ունի, Փիլիպպոսն ալ անոր բարեկամն է, հարկաւ անկէ գիր մը կառնու կը ղրկէ, թէ Տիգրանեան է խռովիչ։ Ահա Բ դուռը Յունաց Ս. Նախկին Պատրիարքին կը յանձնէ առ քննութիւնը ըստ խնդրանաց մեր Ս. Պատրիարքին ուզածնուն պէս այլ ձեւով իմն ձեռնարկութեամբ կը հասնին իրենց փափաքանաց, վասն զի Տիգրանակերտու յիշեալ Յունաց առաջնորդն մեզ լուր կըղրկէ, թէ Բարձրագոյն դուռնէն մեր Ս Պատրիարքին յանձնուէր Ձեր և Փիլիպպոսի վրայօք եղնուելիք քննութիւնը, Ս Պատրիարք մեզ դրեր է հիմայ ես չատ տկար եմ Աստուծով հանգստանալուս կը հրաւիրեմ զձեզ և Փիլիպպոս վարդապետն, և քանի երեւելեաց քաղաքիդ դէմ յանդիման խօսիք և յայնժամ զարժանն կըգրեմք ի Պօլիս եւայլն։

Ուստի ալ ոչ հարցնող եղաւ՝ և ոչ հրաւիրող, Մասիս թիւ 1820, 1876 մայիս 25 թերթին մէջ տեսանք որպէս թէ Յունաց եպիսկոպոս քննութիւն ըրած զմեզ խռովիչ իմացուցած և Մասիսն ալ հրատարակած է։

Ուրեմն Նոր-Դար 2131 և Հայրենիք 125 129 թիւ թերթերուն հրատարակածը կարդարանայ, թէ Պատրիարքարան . . . և առանց դատի . . . խաբելով զկառավարութիւնը վարդապետները կը դատապարտէ յաքսորանս . սուտը ճշմարտութեան գոյնով ներկուած։

Բայց արդի սրբազան պատրիարք ի՞նչ ընէ, և ի՞նչ յանցանք ունի, աղօթէ առ Աստուած որ անխիղճ թըշնամոյդ չնորհք տայ որ խաղաղութեան մէջ հանգիստ ըլլայ, եւ սրբազան Պատրիարքն ալ իրեն ազգային ծանր խնդիրներուն զբաղեալ ցաւը հոգւոյ եւ ազատի թշնամոյդ թելադրիչ եւ հարկեցուցիչ բանիցն։

Ուստի Սամսոնէն եկայ Պոլիս, ուղղակի Պատրիարք սրբազանին ներկայանալու, որը տարաժամ ըլլալով Հարէնց Մեծ. Մարտիրոս էֆէնտին խոսկիտար իրենց օրհնեալ տունը տանելու տարպեց զմեզ, ուստի մենք ալ ի պատիւ ժամ, Մարտիրոս էֆէնտիին գնացինք: Բայց սակայն Արսլանեան աղնիւ Նշան յարգելին մեր դիմաց Սրբազան Պատրիարքին յղեցի սուրբ աջը առնելով իմաց տալ թէ՝ չգիտնալէն ելաւ Մէրսէն եղբօրն ուղղակի Ձեր սրբազնութեան դէմը գալ, ներեցէք որը տարաժամ ըլլալուն Մեծ. Հարէնց Մարտիրոս էֆէնտին տարաւ իրեն տունը վաղը պիտի գայ Ձեր սրբազնութեան:

Ատոր կը պատասխանէ Ս. Պատրիարք: Թող չգայ նա անոր հետ գործ չունիմ:

Ինչ և իցէ, առ լուրը առնելով չգնացի վասն զի իմացայ որ թշնամոյն է բանն և ոչ Ս. Պատրիարքին, և համբերելով տասը օրէն ետքը գնացինք, աջը առինք հրաման ըրաւ նստանք սուրճ մի բերել տուաւ, եւ ապա հարցուցինք խոնարհաբար զմեզ ուզեր էիք, ինչ հրաման ունիք:

Պատասխանեց, հրաման չունիմ:

Ուրեմն յանցանքս ի՞նչ է:

Պատասխանեց յանցանք չունիս:

Ապա ուրեմն, մաղ տեղ մի չնորհ ըրէք նստելու:

Պատասխանեց դուք տեղ շատ ունիք, ահա Զրաճեան Մեծ. Սարգիս էֆ. տունը գնայ հոն կեցիր, եւայլն. երբոր այս պատասխանը առինք. դարձեալ Աստուած օգնական ըսինք ու ելանք դուրս. խորհրդածելով թէ իրաւ ի պօլսոյ մէջ սրտակից բարեկամ շատ ունիմք, կարելի է բայց եկեղեցի չըլլալուն Մեծ. Զրաճեան Սարգիս էֆէնտիի օրհ-

նեալ տունը մեզ ցոյց տուաւ մինչեւ որ բաց եկեղեցի մը պատահի, որովհետեւ եկեղեցիք վարդապետօք լցուած են, իսկ Զրաճեան էֆէնտ. որ 1864ին եւ 1869ին զմեզ տարիներով իւր օրհնեալ բնակարանը տարաւ եւ մահա-գոյժ հիւանդութեանս մեծ խնամք տարաւ, ինձմէ զատ երանաշնորհ Ախթամարու եւ Սըսոյ Խաչատուր և Նիկողոս կաթուղիկոսները Սեբաստիոյ ծերունի Կարապետ եպիսկո-պոսը տարիներով իւր օրհնեալ բնակարանի մէջ պահելով խնամք տարեր և Ս. Պատրիարքի բարեկամ, ուրեմն Ս. Պատրիարք լաւ ըսաւ, բայց յանցանք չունիս ըսելն ի՞նչ էր, և զիս տեղէս հանել Պօլիս եկուր, Բալու գնայ, Չնքուշ եկուր, Էջմիածին գնայ, Սեբաստիա կեցիր, տեղ մի երթար, Մարզըվան կեցիր, Էջմիածին գնայ, և հոն տեղ հանգստացիր, եւայլն:

Ահա 40 ամեայ վարդապետ և 12 ամեայ եպիսկո-պոս և մանաւանդ ազգայնոցս ամենայն հաւատարմու-թեամբ աշխատող և 71 ամեայ հասակաւ ծերունի մի ի՞նչ իրաւունքով այսպէս թափառական կընեն, Աս-տուծմէ ոչ երկնչին, եւայլն:

Եթէ քահանայից ձեռնադրութեան համար այսպէս կը՞նեն, ահա վանահարց և առաջնորդաց վկայականնե-րը, եթէ Տիգրանակերտու մէջ խռովարար էի, ահա չորս տարի եղաւ որ քաղաքէն մեկնած եմ և մանաւանդ չատ բողոքներ գրեցի Պատրիարքարան, բողոքներուս մտիկ չըրին, և չպատասխանեցին անգամ, եթէ գանգատաւոր ունէի կը դատուէի անոր հետ յանցաւոր ելլէի ան ատեն պատիժ կրէի, չէնէ 7 տարի էր որ հայրենեացս մէջ ա-ռանց պաշտօնի և առանց եկամտի նստած օրերս կանց-նէի, մեղք չէր այսքան դրամ ազգային պատրիարքա-րանի սընտուկին հեռագրի և նամակի ճամբու ծախք տալ

թէ՝ եկուր ; գնայ , կեցիր , մի գար , եւայլն • նոյնքան ալ մեզնէ ահա կուգամ, կերթամ, եւլն։ Ինչ և իցէ այսօր լման չորս տարի եղաւ որ Տիգրանակերտէն ելած եմ, հիմայ մեծամեծ խռովութիւն հանօղը ով է, և ասկէ յառաջ Պատրիարքարանի պատուիրակ Մեծ• Պօյաճեան Օհաննէս էֆ• եւայլն փողոցներուն մէջ օտար ազգաց առջեւ քարշն 'ի քարշ ծեծել տուօղն ո՞վ էր , եւ ծեծին տեղիք և պատճառ տուօղն ո՞վ էր, և յետ այնորիկ ատ քրէական յանցանքով գիշերով կառավարութիւնը •է•Դէրչէ ջորիի վերայ դնելով Տիգրանակերտէն ի պօլիս ղրկուօղն ո՞վ էր • եթէ մենք նայն միջոցին հոն գտնուած ըլլայինք այս քրէական յանցանքը • մեր վերայ դնելով հիմայ ի խաչ հան՝ պիտի աղաղակէին • ինչպէս որ Խ••չէն բառը իբրեւ կարկտան մեր վերայ դնել ուզելով ի զուր տեղն մինչ ցարդ զմեզ թափառական ըրին ։

Դարձեալ 1876 փետրուար ամսոյ մէջ Լուլօեան հաճի Յարութիւն աղայի և՛ անոր եղբօր եւ այլ անձանց հետ կառավարութեան առեաններուն մէջ խաթինթաք եղօղն ո՞վ էր եւ եկեղեցւոյ քամբանակը ուրբաթ օրն հնչեցնող բազմութիւնը հաւաքող եւ ապիտակ թուղթի եւ բազում թերթերուն վերայ խառն ի խուռն բազմութեանն մինչեւ անգամ վարժարանի եւ արհեստաւորաց աշակերտացմէ ստորագրութիւն հաւաքողն ո՞վ էր , որպէս թէ նոր եկող Թէֆիք Ահմէտ բաշայէն չնորհակալութիւն գրելու համար • տակաւին անկէց բարիք մի չ տեսած ։ Ուրեմն կարելի է մեր վրայօք ալ սուտին ուզած չնծու գանկատներ գրած ըլլայ , ո՞վ գիտէ , հապայ հարիւրաւոր ապիտակ թուղթի վերա դրուած ստորագրութեանց եւ կնքոց թերթերն ինչ ըրաւ • մի • գուցէ հրով այրեց եւ ջրով ջնջեց եւ կամ ուզածը գրեց

աստ եւ անդ յղեց, ահա սոր նման շատ մը վտանգաւոր գործեր ընօղը ո՞վ էր, Տիգրանեանն էր թէ՞ Փիլիպպօս հայրն է՞ր:

Արդ մինչեւ ցարդ ըրածնին, գործածնին, խօսածնին և գրածնին որ մէկը իրաւ ելաւ, և որ մէկը կատարուեցաւ թող ցոյց տան:

Ահա այսքան խորհրդածութիւններ ընելով հասանք Իւսքիւտարու Նաւահանգիստը և գնացինք Մեծ. Մ. Աբրահամ էֆէնտիի նահապետական օրհնեալ տունը, և կեցանք հոն չորս ամիս և վայելեցինք զնորին զարդարեալ բարեկէց սեղանը, և օրհնեցաք և կը օրհնեմք, աղօթեցինք և կաղօթեմք նորին կենաց և օրհնեալ բարեյիշատակ զաւակացն արեւշատութիւն, և համայն նորա պէս հիւրասէր հայոց ազնուականաց ընտանեաց որ կը մխիթարեն ինձ նման վասն արդարութեան հալածեալ վշտակիրները, զի արմատք արդարոց ոչ հատցին Առակ. ԺԲ. 3:

Եղաւ որ Ս. Պատրիարքէն Ս. Խաչ եկեղեցւոյ Թաղ. Մեծ. աղաներ Ս. Պատարագ ընելու համար գիր բերին մեզ Ս. Պատարագ ընել տուին, և խնդրեցին տեղւոյն քարոզիչ ըլլալ յանձնառու չեղանք, վասն զի Ձերմակեանի և ոմանց զիրար հալածելը կար, եւ այն միջոցին Տէվլէթլու Սայիտ փաշան զմեզ հրաւիրեց իւրեն պալատը Ջէյթունի վրայօք տեղեկութիւն ուզեց; մենք ալ ճիշտ ճշմարտութիւնը խօսեցանք թէ Ջէյթունցիք յետին ծայր աղքատ եւ սկզբանէ անտի տարեկան քսան հազար ղրշ արքունի տուրք ունէին վճարելու ան ալ հազիւ թէ կրնային վճարել, վասն զի յոյժ աղքատ են բայց տէրութեան ամենահաւատարիմ հպատակ են, շատ աշխատաւոր եւ տեղերնին անբերրի եւ քարոտ, իրենք մերկ եւ բոկ. չարաչար գիշեր ցերեկ լոկ հացի մի հա-

մար երկաթագործութեամբ եւ չորեզանութեամբ աշխատող :

Եւ այլ շատ մը տեսածս Չէյթինցւոց թշուառ խըղճութիւնները պատմելէն զկնի, բարձրապատիւ փաշան ցաւ զգալով խոստացաւ խնամք տանել և արդարութեամբ բարիք ընել, ուստի շնորհակալ ըլլալով մեկնեցայ և եկայ Իւսկիւտար :

Դարձեալ նոյն միջոցին թշնամին մեր վրայօք անուանարկութեան յօդուածները սկսաւ լրագրաց թերթերուն մէջ զետեղել : Երբոր զրպարտութեանց հերքումն գրեցի յղեցի երեք անգամ ըստ լրագրաց կանոնի համեմատ Մասիս չհրատարակեց, ուստի Բարձրագոյն դրան միջամտութեամբ իսկոյն հրատարակեց, Մասիս 2369 թիւ թերթին մէջ :

Ահա այսպէս զիրար զրպարտելու և հալածելու ետեւ ըլլալով օր քան զօր յառաջ յառաջ կը քալենք, ի պատիւ . . . ին, և չըսեմք թէ շատ և շատ ետեւ մնացեր ենք, Ցոյնը և Հրէայք Հայոցմէ շատ յառաջ են և կարգադրեալ :

Ի՞նչ պէտք է մենք Հայեր զիրար սիրել և իրարու բարիք ընել կվա՞յլէ մեզի, քաւ լիցի, քանի որ ատելութեան և խռովութեան վատ ոգին մեզ սիրելի է քան զսիրոյ և միաբանութեան ոգին, ուստի զիրար հալածել և զրպարտել մեզ համար ոչ մեղք է և ոչ ամօթ վասն զի մեր սիրելին է ատելութեան ոգին, որոյ պտուղն է խռովութիւն անմիաբանութիւն, իրարու վնասել եւայլն եւայլն :

3 Թուանշանն որ տետրակիս 26 րդ· երեսին մէջ ըսինք, օտար հողի վրայ Հայերը զիրար կը հալածեն զրպարտելով : Ահաւասիկ տես ստորեւ :

Գանք հիմայ մեր թշնամիներուն վրայօք ըսել քանի մի խօսք․ վասն զի անոնք այնպէս կը կարծեն որ իրենց մեղքի դէմ թէ գաղտնի եւ թէ անուղղակի կերպով զմեզ մարդկանց առջեւ բերանացի եւ կամ լրագրաց թերթերով անուանարկելնին, իրենց փառք եւ պարծանք եւ սրտերնուն հրճուանք, եւ մեզ ցաւ եւ տրտմութիւն ըլլալ կը պատճառեն ։

Բայց շատ սխալած են, ինչու որ Քրիստոս Աստուած մեզ կըսէ, ընդէր ընդ մաքսաւորս եւ ընդ մեղաւորս ուտէ վարդապետն ձեր . . . Մտ. Թ. 11։ Ինչու համար այսպէս կըսէ, վասն զի դէշ խօսիլ, զմարդ նախատել. եւ զընկերը ցաւցունել, վատ մարդու եւ մարդակեր գազաններու, օձերու եւ կարիճներու կը վերաբերի. երբոր մարդ իրեն կատարեալ մարդկութենէն բաժնուելով, գազաններու եւ օձերու կարգին մէջ կը խոնարհի վատութիւն գործելու, ուստի այնպիսիներուն համար աղօթք ընելու ենք որ իրենց վատութեան միջոցով, եւ մեր համբերութեամբ առաքինութեան տէր կընեն զմեզ, վասն որոյ Յիսուս ըսաւ, «ոչ եկի կոչել զարդարս» այլ զմեղաւորս յապաշխարութիւն, վասն զի ամէն մարդ յանձնառու չըլլար մարդասպան գազաններու պաշտօնը վարել ինչպէս որ պատահմամբ մէկը շատ խորունկէն զմեզ խայթած էր լսելեան որ ապագային մէջ թէ մենք եւ թէ մեր բարեկամները ցաւ զգամք ։

Բայց Աստուած խնկոյն յայտնեց մեզ, յուլիս ամսոյ մէջ Գատըգիւղ Ֆնտըլեան Մեծ. Պետրոս էֆէնտիի օրհնեալ բնակարանը յգտնուելուս, երեկոյին տետրակ մի բերին յիշեալ էֆն. ընծայ, տետրակը ձեռքս առնելով մի անգամ բացի եւ տեսի նոյն թերթին մէջ մեր վրայօք զրպարտութիւն մը ։

խաչատուր խան էֆ. ին յանձնեցին, Բայց երբ Թաղե-ցիք լսելով իսկոյն հետեւեալ հանրագիրը բերին մեզ։

Գերապատիւ սրբազան հայր.

Անկէց 20 տարի յառաջ մեր Ս. եկեղեցին ուխտա-տեղի մը դարձուցիք, մեծամեծ օգուտներ գործեցիք եկեղեցւոյս, երթալէդ ետքը աւեր դարձաւ, հիմայ Ձեր Բարձր Սրբազնութեան շնորհիւ դարձեալ սկսաւ կարգի մտնալ, իմացանք որ մէնէ պիտի մեկնիք, փութացանք այդու խնդրագրով արգիլել և թոյլ չտալ մեզնէ զատ-ուելու, կը յուսամք որ զմեզ տրտում չթողլով պիտի ընդունիք . . . եւայլն։

ի դիմաց Թաղ. խորհրդոյ

Ատենադպիր — Ատենապետ

Գ. ՔԻՐԷՃՃԵԱՆ — ՊՕՂՈՍ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Ստորագրութիւնք Բաղչեցւոց 126

1879 դեկտ. 15

Ուստի խնդիրքնին ընդունելով հաւատարմացուցինք մինչեւ Ս, Ցարութեան Զատկին մնալ։

Հոկ. 22 ին որ Գաղտատի ժողովրդոց նամակ գրե-ցինք հարցունելով նոցա հոգեւոր կացութեան վիճակը, հետեւեալ նամակը եկաւ յունվարի վերջ։

Բարձրաշնորհ Տ. Մկրտիչ Ս. Արքեպիսկոպոս
Սրբոյ աջոյդ համբոյր։

Հոկ. 24 Թուականաւ ընկալայ գնամակ օրհնութեան զոր կարդալով ընդունելի եղեւ ինձ. գհոամայեանն ի Ձէնջ

. . . ցաւ է ինձ ասել, այս վերջ ամիս է վարժատունը գոց է . . . մեծամեծ խռովութիւնք յուզուելով . . . միմեանց անհամաձայն և անմիաբան . . . կարօտ եմք այնպիսի կորուստի առաջքը առնող անձնադիր հովուի մը, այլ եւս մնայ ձերին բարեհաճ կամացն . . . եւայլն։

1879 դեկ. 12 Գաղատա

Յ. ՄԵՍՐՈՎԲ ՔԱՀԱՆԱՅ

Նոյնպէս նամակ մի ալ վսեմ. Մատթէոս էֆ. Մարկոսեանէ առինք Խակէնաէրէնէն որ վերոյիշեալ նամակին նոյնն էր։

Յիշեալ նամակներուն պատասխան գրեցի 1880 մարտ 15 ին։ Հետեւեալն է։

Յետ ողջունի և օրհնութեան. բովանդակութիւնը այս էր։

Մեր նախահայր Հայկը Բաբիլոնի խառնակութենէն և Բէլի անաստուածութենէն փախչելով եկաւ իրեն հայրենիքը մինչդեռ Նոյ կենդանի էր, լաւ սեպեց Աստուածպաշտութեամբ կեալ ի խաղաղութեան քան թէ խռովութեան մէջ ճոխ աշխարհի փառօք . . . Նոյնպէս և Ձեր հայրերը Հայաստանի խռովութենէն և թշնամեաց նեղութենէն հեռանալով եկած են Բաբելոն որպէս թէ խաղաղ կեանք վարելու, երբոր դուք այժմ խռովութիւնը կը սիրէք եղեր, ալ ի՞նչ հարկ կայ օտար երկրի մէջ մնալ փութացէք Հայաստան և մտէք խռովութեան տունը ուր որ արմատացած է, ողլին առելութեան . . . ալ ի՞նչ պէտք է Քաղթէայոց մէջ իրարու հետ կռուիք և խռովիք . . . . Արդ վսեմ. Մատթէոս

էֆէնտիի հետ ի միասին երեւելի ողջամիտ խաղաղասէր անձանցմէ մասնաժողով մի կազմէք և խռովեալ անձինքը բերէք հաշտեցուցէք, որ Ս. Յարութեան զատկի հաղորդութեան արժանի ըլլան, և մեզ ալ հեռագրէք որ ճամբայ պիտի ելլեմ Ս. Զատկէն առջը եթէ Տէր կամեսցի:

1880 մարտ 12 ՄԿՐՏԻՉ ԵՊԻՍ.
Կ. Պոլիս ՏԻԳՐԱՆԵԱՆ

3 Թուականին մէջ ըսինք օտար հողի մէջ հայեր դէրար կը հալածեն և կը զրպարտեն: Երբոր Գիլխադիր Ս. Յակոբ եկեղեցին սկսաւ խուռն բազմութեամբ դիմել մեր յայտնի և աներեւոյթ թշնամին նախանձու չարին հետեւելով սկսաւ դաւադրութեամբ գործել և նորին դրդմամբ Սամաթիոյ քահանայք մեծ պահոց Դատաւորի կիւրակին ժամ ըսին, երեքշաբթի օրն ալ 1 ձգեցին եկեղեցին և ժողովուրդն առանց աղօթքի, և գնացին. երկու օր գոց մնաց Ս. Եկեղեցին, պատճառ՝ չիք բանաւոր պատճառ, [illegible] Նոյն չէ՞նէ օտար եղէր [illegible] [illegible] [illegible] նախադրէնէ [illegible] [illegible] մէջ [illegible] [illegible] որ ասիկայ ամէն եպիսկոպոսի պարտքն է հսկել Թաղին ժողովուրդ և Թաղ. խորհուրդ քահանայից սոյն ապօրինաւորութիւնը տեսնալով, դուրսէն պանդուխտ քահանայ մը բերին, եկեղեցին բացին սկսան ժամ ըսել:

Հիմայ սա մտածելու է, քահանայք որ իրենց պաշտօնն է խաղաղութիւն քարոզել (տես գրքիս 42 երես 10 րդ. ազգային պատիժն, ոմանք քահանայքն: ուր որ ընդարձակ գրուած է,) և մանաւանդ այս Ս. մեծ պահոց ապաշխարանաց օրերուն մէջ իսկ իրենք խռովեալ եկեղեցին կը գոցեն և ժողովրդեան մէջ խռովութիւն ձգելու նկատմամբ կը թողուն կերթան, բայց ժողովուրդ առանց ճաշակի կը վախճանի եղեր, կամ առանց ա-